վարիչները խորապէս գիտակ չեն իրենց վարած հաստատութեանց անցուդարձին։

*** Գործադիր Կոմիտէն արդէն իսկ հրատարակած է հրամանագիր մը, կուլակներու իրաւունքներու վերահաստատման մասին։ Իրենց ընտրական իրաւունքներէն զրկուած եւ տեղափոխուած կուլակները պիտի վերստանան իրենց իրաւունքները հինգ տարուան ժամանակամիջոցի մը մէջ, սկսելով տեղահանութեան թուականէն, եթէ, այդ ժամանակաշրջանի ընթացքին ապացուցած ըլլան թէ դադրեցուցած են իրենց հակախորհրդային քարոզութիւնը եւ շարժած են իբրեւ պարկեշտ եւ բարեխիղճ աշխատաւորներ։

## Ապստամբութիւն Տաճկաստանի մէջ

Մոսկուայի հեռագրական գործակալութիւնը կը ծանուցանէ թէ կարմիր բանակին զինուորները, ժամանակցութեամբ Տաճկաստանի ժողովուրդին, փախուստի մատնած են հրոսակախումբի մը մնացորդները որոնք սահմանը անցեր էին Պասմաճ Իպրահիմ պէյի հրամանատարութեամբ։ Իպրահիմ եւ իր գործակիցները գերի բռնուած եւ Թաշքէնտ փոխադրուած են։

## Ծանր դէպքեր Պուլկարիոյ մէջ

Գործադուլները իրարու կը յաջորդեն Պուլկարիոյ մէջ։ Մէկ շաբաթէ ի վեր աշխատանքները դադրեցուցած են հիւսիսային շրջանի հիւսուածեղէնի բանուորները։ Հինգշաբթի օր Եամպոլի մէջ ծանր կռիւներ պատահեցան ոստիկանութեան եւ բանթողներուն միջեւ, որոնց թիւը 4000ի կը հասնէր։ Ոստիկանները ուզեցին ցրուել ցուցարարները, բայց անոնք դիմադրեցին։ Ոստիկանները կրակ ըրին, իսկ բանուորները քարերու կարկուտ մը տեղացուցին։ Հեծելագունդ մը օգնութեան հասած ըլլալով, կռիւը սաստկացաւ։ Գնդակներն ու քարերը կը տեղային փոխադարձաբար։ Իբրեւ հետեւանք, բազմաթիւ բանուորներ եւ ոստիկաններ վիրաւորուեցան։

Ուրբաթ օր, Րիլոյի (Սօֆիա) ջուրի բանուորներէն իբր 1000 հոգի գործադուլ ըրին։ Գրգռութիւն կը տիրէ նաեւ Ֆիլիպէի եւ Տուպնիցայի ծխախոտի մթերանոցներուն մէջ։ Բանուորները 25 առ յաւելում կը պահանջեն։

## 2700 աշակերտներու ծնողները դէպի բանտ

Պրունշվիքի (Գերմանիա) ազգային - ընկերվարական կառավարութիւնը բանտարկութեան վճիռ արձակեց 2700 ծնողներու դէմ, որոնք երկու օրուան դասադուլ ընել տուած էին իրենց զաւակներուն, բողոքելու համար կրթական նախարարին մէկ տնօրինութեան դէմ։ Ընկերվարականները ընդհ. ներման բանաձեւ մը առաջարկեցին խորհրդարանին, որ մերժեց, հետեւաբար 2700 ծնողները պիտի բանտարկուին։

## Ֆէյսալ թագաւորը Եւրոպա կուգայ

Միջագետքի թագաւորը Պաղտատէն ճամբայ ելաւ օդանաւով, Եւրոպա գալու համար։ Երեք ընկերի կը սպասուէր։

## Յաջողութիւն մը Սանասարեան դատին մէջ

Պոլսոյ թերթերը կը գրեն թէ յունիս 30ին նորէն քննուեցաւ Սանասարեանի դատը, եւ «ազգը կարեւոր յաջողութիւն մը ունեցաւ»։ Պատրիարքարանի փաստաբանները առարկեցին թէ Պոլսոյ կուսակալութիւնը լաւ չի կատարեր խանին մատակարարութիւնը, թէ շատ մը սենեակներ պարապ կը մնան, թէ յարակից Մահմուտիէ խանին կողմէ ոտնձգութիւն ըրած եւ Սանասարեան խանի ներքնայարկի մէկ մասը գրաւած են եւն։ Իբրեւ եզրակացութիւն, պահանջեցին որ խանին մատակարարութիւնը յանձնուի վստահելի ձեռքի մը, մինչեւ դատին վախճանը։

Դատարանը ընդունելով այս պահանջը, որոշեց խանին մատակարարութիւնը առնել կուսակալութենէն եւ յանձնել Էվգաֆի իրաւագէտ խորհրդական Սիւլէյման Ջիւհտի պէյի, պայմանաւ որ Պատրիարքարանը 25.000 ոսկիի նոր երաշխաւորութիւն մը ցուցնէ։

*** Բանկալթիի գերեզմանատան դատին մէջ ալ, քաղաքապետութեան փաստաբանները նորէն իրաւասութեան խնդիր հանեցին, ժխտելով հայ համայնքի եւ Պատրիարքարանի գոյութիւնը։ Դատարանը փակուած համարեց այս խնդիրը։

## Մամուլի ազատութիւնը Թուրքիոյ մէջ

Իբրեւ հետեւանք Թուրք թերթերու միջեւ ծագած բուռն պայքարին, Ազգ. Մեծ Ժողովը քննութեան առաւ հարցապնդման առաջարկ մը։ Վիճաբանութիւնը շատ բուռն էր։ Շատ մը երեսփոխաններ խօսք առին եւ խստօրէն քննադատեցին ընդդիմադիր թերթերուն «նենգ եւ կործանարար պայքարը»։

Բանաձեւ մը, զոր ստորագրած են յիսուն երեսփոխաններ, կը պահանջէ քաղաքացիական իրաւունքներէ զրկել եւ վտարել ութ խմբագիրներ։

## Սպառնալիք ընդդիմադիրներուն

Անթալիոյ երեսփոխան Տոքթ. Նազիֆ Շէրէֆ «Հաքիմիյէթը Միլլիյէ»ի մէջ հրատարակած է յօդուած մը ընդդիմադիր լրագրութեան մասին, ուր կը գրէ.

— Ընդդիմադիր լրագրութեան մասին խորհրդածութիւններ եւ վերլուծումներ կ'ընեմ, եւ միշտ այն եզրակացութեան կը յանգիմ թէ ան միշտ վնասաբեր եղած է երկրին։ Ընդդիմադիրները տնտեսական տեսակէ՞տ մը յայտնեցին, ընկերային ցաւի մը դարմա՞նը գտան միթէ։ Յաջողեցա՞ն ամենափոքր օրէնքի մը մէկ գիտական քննադատութիւնը ընել։ Ո՛չ։ Ընդհակառակն, անոնք մեծամեծ վնասներ կը հասցնեն երկրին, վտանգաւոր կրակի մը հետ կը խաղան։ Բայց թող ապահով ըլլան թէ բոլորը մէկ պիտի այրին իրականութեան դժոխքին մէջ, եւ չպիտի կրնան Թուրք երիտասարդութեան, Թուրք հասարակապետութեան մէջ պառակտումի ռումբը արձակել։

## Յանկարծամահ

Վիէննայէն կը հեռագրեն թէ յանկարծամահ եղաւ ընկերվարական «Արպայթէր Ցայթունկ» թերթին խմբագրապետը, Ֆրիտրիխ Աւստերլից, 69 տարեկան։

Հանգուցեալը անդամ եղած է Աւստրիոյ խորհրդարանին, գրեթէ քառասուն տարի։













# Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ՊԷՔՕՆԻ «Մասիս» խումբի հերթական ժողովը այսօր երեքշաբթի իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

**ԳԱՐԱՌ**

ՍԷՆ ԼՈՒԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը այս իրիկուն ժամ. 8ին: պարտաւորիչ ներկայութիւն:

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի ընկերական ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին, կարեւոր օրակարգ: պարտաւորիչ ներկայութիւն,

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

**ՍՏԱՑԱՆՔ**

իսի լէ Մուլինօ, Հօրափեան.— 35 ֆրանք:

փիէրֆէօ, Ս. Ա.— 35,

Քլամառ, Ա. Խ.— 35,

Ռուսէ վասէ, Պիլ.— 70,

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտեմ հայրս Թովմաս էքմէքճեան եւ եղբայրս Անդրանիկ (կարնեցի), որոնք 1915ին մնացին Մալաթիոյ սարերը, Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Սիրանուշ էքմէքճեանի, 13 Rue des Dominicains, Marseille, Գրատուն «Յառաջ»,

— Սեբաստացի (Գէփճելիէն), պղնձագործ Աւետիս Օտապաշեան կը փնտռէ իր աղջիկը՝ Արշալոյս Օտապաշեան, որ 9 տարեկան հասակին տարագրուած էիր խորթ մօր Զարուհիի հետ: իսկական մօր անունը էլմաս է, 1917ին Նիսիպիի թոռուն Մահմուտ գիւղը ըլլալը հաստատուած է: Անկէ ի վեր տեղեկութիւն չիկայ իր մասին: Ստոյգ լուր տուողին մէկ տարեկան «Յառաջ» եւ 200 ֆր: նուէր, իմացնել՝ Ա. Օտապաշեանի, Traverse du Canal, No. 2, La Valbarelle, Marseille, France.

կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել,










IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

տասխանեն երկու երկիրներու քաղաքական շահերուն։ Յետոյ ուրախութիւն յայտնեցին թէ երկու կողմերն ալ կատարեալ բարեացակամութեամբ գործադրած են անհրաժեշտ միջոցները, սահմանագլուխի ապահովութիւնը ամրապնդելու համար։ Նախարարները բացորոշապէս յայտնեցին թէ Թոյլ չպիտի տան ո՛ր եւ է ձեռնարկ՝ երկու երկիրներու սահմաններու ապահովութեան դէմ։

## Երկու նաւթահորեր բռնկեցան

Պուքրէշէն կը հեռագրեն թէ Փլօէշթի մօտ, ահարկու հրդեհ մը ծագեցաւ նաւթահորի մը պայթումէն։ Կրակը նախ տարածուեցաւ երկու նաւթահորերու մէջ որոնք բռնկեցան։ Հովը կայծեր տարածելով, պատճառ եղաւ որ բռնկի նաեւ բանուորներու բնակավայրը։ Բոլոր տաղաւարները այրեցան եւ քաբիւղի երեք մթերանոցներ պայթեցան։ Պայթման ձայները կը լսուէին 40 քիլոմեդր տարածութեան մը վրայ։ Բոցավառ քարիւղը կը սպառնար մոխիր դարձնել նաեւ Սկորցէնի գիւղը։

Բնակիչները հարիւրաւոր բանուորներով մասնակցեցան օգնութեան գործին եւ յաջողեցան փրկել գիւղը։ Զոհ չկայ։ Բայց նիւթական վնասները շատ ծանր են։

### ՈՂԻՄՊԻԱԿԱՆ

ՏՕՆԻՆԻ Հ. Մ. Ը. Մ.Ի ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ՅՈՒԼԻՍ 12ԻՆ

նաւասարդեան խաղեր, ֆութպոլի եւ հեծելանիւի մրցում

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ԻԹԱԼԻԻ Աղբիւր Սերոբ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 32 Ave. des Gobelins. Կը խօսի ընկ. Ռէն, Պարտաւորիչ ներկայութիւն։

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕի Զաւարեան կոմիտէի դասախօսական ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին նոր Ակումբին մէջ, 241 Rue J. J. Rousseau, Իսի լէ Մուլինօ։ Կը խօսի՝ ընկերուհի Ս. Տէր Դաւթեան, Ռուսոյի մասին։

ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 9ին կառ փՄոնպարնասի քովի սրճարանը։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Սարգիս Մինասեան խումբի դասախօսական ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Հայ Ակումբին մէջ, 1 Bld. Carnot. Կը խօսի՝ Ընկ. Վ. Շուշանեան, նիւթ՝ «ինչ է ընկերվարութիւնը»։

**ԳԱՒԱՌ**

ՄԱՐՍԷՅԼԻ ընկեր Կարօ խումբի ժողովը վաղը կիրակի ժամը 2ին ընկ. Յովհաննէս Զ. սրոյեանի բնակարանին մէջ։

ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕԻ Պատ. միութեան, միութեան մասնաճիւղին ընկերահամակրական դասախօսութիւնը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 7ին, միութեան Գրադարանասրահին մէջ, 5 Rue Alexandrie. Պար Միշէլ։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Ա. Մարտիրոսեան։

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ընկերահամակրական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին։ Հ. Յ. Դաշնակցութեան Ակումբին մէջ։ Կը հրաւիրուին բոլոր ընկերները եւ համակիրները։

---

Տէր եւ Տիկին Ցայլաբեան (Լա Պոքա), Տէր եւ Տիկին Յովհաննէսեան (Տրակինեան) եւ իրենց պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն Տրակինեայի հայրենակիցներուն, Տէր Մեսրոպ քահանային եւ ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՀԱՃԻ ՄԱՐԻԱՄ ՏԻՄԻՃԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ։

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ 6 յուլիս, երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 5ին։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

**ՍՏԱՑԱՆՔ**

Մարսէյլ, Գործ.— 1081 ֆր. 60 ս.։ կարգադրեցինք։

Անվէրս, Տ. Ս.— 80։

Նանթէր, Մ. Թ.— 100։

Քոլոլէն, Պ. Ֆ.— 35։

Փարիզ, Յ. Է.— 65։

Սկսանք ղրկել։

Բուսիյեօն, Գ. Ք.— 70։

Ժուայնէօզ, Ս. Մ.—

Վիէն, Ուզ.— 320։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՉԱՐՍԱՆՃԱՂԻ Լիոնի Հայր. միութեան մասնաճիւղերու Գ. Պատգամաւորական ժողովը տեղի պիտի ունենայ Լիոնի մէջ վաղը Կիրակի. 206 Rue Duguesclin Հ. Յ. Դաշնակցութեան Պատանեկան միութեան Գրադարանը։

ՔՂԻԻ Հայր. Միութեան (Մարսէյլ) ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի առտուան ժամը 9ին, իր սովորական հաւաքատեղին, 14 rue Colbertի ընդարձակ սրահը։ կարեւոր օրակարգ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հ. Մ. Ը. Մ.ի Մարսէյլի վարչութիւնը, իր շնորհակալութիւնը կը յայտնէ Պ. Ս. Յովակիմեանի, որ իր հօր Պ. Անդրէաս Յովակիմեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, միութեանս նուիրեց 500 ֆր.։ (կնիք)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտեմ հայրս Թովմաս էքմէքճեան եւ եղբայրս Անդրանիկ (կարնեցի), որոնք 1915ին մնացին Մալաթիոյ սարերը։ Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Սիրանուշ էքմէքճեանի, 13 Rue des Dominicains, Marseille, Գրատուն «Յառաջ»։

Պ. ՏԻՐԱՆ Չաքարեանէ եւ իր ծանօթներէն կը խնդրուի իր հասցէն յայտնել «Յառաջ»ի վարչութեան։ Իր վերջին հասցէն էր, 82 Rue de la Mare, Paris (20).



### ՓԻԼԻՊՊՈՍԻՆ ՍՐՃԱՐԱՆԸ

6 Bld. Carnot, Alfortville, Seine

Աչքերնիդ լոյս, Ալֆորվիլի հայեր։ Յուլիս 14ի տօնին առթիւ Կիրակիէն սկսեալ մինչեւ Երեքշաբթի կէս գիշեր։

Քնար արեւելեան նուագախումբը պիտի նուագէ սրճարանիս մէջ ի յարգին մինչեւ առաւօտ։ Լաւ պատեհութիւն ժամանցի։ Ծոխ պիփէ։


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN






### ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ «ՀԱՅ ԱԿՈՒՄԲ»ԻՆ

Այս Երկուշաբթի իրէկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ

1 Bld. Carnot, Ալֆորվիլ

ներկայացում, բանախօսութիւն, երգ, արտասանութիւն եւ պար ջազ պանտ ղեկավարութեամբ Պ. Գ. ՄԱՆՏԻԿԵԱՆԻ

Գին 5 ֆրանք

### ՑԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Մարաշի Հայր. Միութեան կողմէ

Վաղը Կիրակի ժամը 2.30ին Սալ տէ Քաթոլիկի սրահին մէջ

Կը խօսի՝ Պ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

Երգ, նուագ, արտասանութիւն, երկու զաւեշտ եւայլն

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ՎԱՐԴԱՎԱՌԻ ԱՌԹԻՒ

Տարօն Տուրուբերանի Հայր. միութիւնը սարքած է թէյասեղան մը ի պատիւ իր հայրենակիցներուն։ Այս կիրակի ժամը 3ին, 150 Route d'Orléans, Պանեէօ։ Կը հրաւիրուին Տարօնցի հայրենակիցները իրենց ընտանեկան պարագաներով։

ԾԱՆՕԹ.— Փորթ տ'Օրլէանէն առնել 88 թիւ հանրակառքը և իջնել Պանեէօ կայարանը, ուր առաջնորդողներ պիտի սպասեն։

### Հ. Մ. Ը. Մ.

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԲԱՆԱԿՈՒՄ-ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Այս կիր. առաւօտէն մինչեւ իրիկուն Meudonի անտառին մէջ

Կը մասնակցին Սկաուտ բոլոր խումբերը

Տեղի կ'ունենան սկաուտական խաղեր, ձեռական աշխատութիւններու ցուցադրութիւն եւ անակնկալներ։

Եկէ՛ք եւ տեսէք նոր սերունդի փրկութեան կենդանի եւ հաբազատ պատկերը։

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Արաբկիրցիներու Միութեան

Փարիզի մասնաճիւղին կողմէ

Կը նախագահէ՝ Պ. ԴԱՒԻԹ ԲԷԿ

19 Յուլիս Կիր. առաւօտեան ժամը 9էն մինչեւ իրիկուան ժամը 9

La Fontaine des Nouettesի պաղ աղբիւրին մօտ

Հայկական եւ եւրոպական պարեր, անակնկալներ

Ճաշը կարելի է միասին բերել։ Պիւֆէ ժողովրդական գիներով։

Առնել հանրակառք էնվալիտէն կամ Մոնփարնասէն եւ իջնել Viroflay.

մակերպուած էոր, մէկ շրջանէն միւս շրջանը կը բռնէ անակնկալ կերպով եւ ոստիկանութիւնը կը մատնէ շփոթութեան եւ անկարողութեան։ Երկրին ամէն կողմը, բազմաթիւ ձերբակալումներ կը կատարուին։

## Կարմիր յրտեսներ Ռումանիոյ մէջ

Ռումէն թերթերը կը յայտնեն թէ Պրասովի տեղական իշխանութիւնները բոլշեւիկ լրտեսական նոր ցանց մը մէջտեղ հանած են։Ան կազմակերպուած էր փոխարինելու համար անցեալ աշնան բռնուած լրտեսական կազմակերպութիւնը։ Երեսունի չափ անձեր ձերբակալուած են, շատերը զինուորական, ինչպէս նաեւ հազարապետի մը կինը։

## Յունաստանի նաւային ծրագիրը

Յունական Ծերակոյտին մէջ երկար վիճաբանութիւն տեղի ունեցաւ նաւային ծրագրի մասին։ Նախարարապետ Պ. Վէնիզէլոս ըրաւ հետեւեալ յայտարարութիւնները.

— Մեր նաւային զօրութիւնը ազգային պաշտպանութեան կարեւոր ազդակներէն մին է։ Պէտք չէ մոռնալ որ Թուրքիա կէօպէնը ունի։ Հինգ տարուան համար որեւէ դժուարութեան առջեւ չենք գտնուիր, Թուրքիոյ հետ մեր ստորագրած Նաւային դաշինքին հետեւանքով։ Բայց այնքան ժամանակ որ Թուրքիա զօրաւոր նաւատորմ ունի, մենք եւս պէտք է ունենանք։ Մի կարծէք թէ մեր Նաւային ուժը Թուրքիոյ վրայ գերակշռութիւն ունի։ Պէտք է յայտարարեմ թէ հակառակ իմ խաղաղասիրութեանս եւ Ազգերու Դաշնակցութեան հանդէպ ունեցած վստահութեանս, չեմ կրնար Յունաստանը զինաթափելու պատասխանատուութիւնը ստանձնել»։

Այս բացատրութիւններէն յետոյ նաւային ծրագիրը ընդունուեցաւ Ծերակոյտին կողմէ։

### ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վիէնի նորակազմ Պատ. միութեան կողմէ։ Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Բանթինի մէջ։

Կը խօսին՝ դերասան Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆ եւ Պ. Բ. ԱՂԱԲԷԿԵԱՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ «ԷԼ ՄԻ ԱՂՕԹԻՐ»

գեղարուեստական բաժին — Մուտքը ազատ է

Տէր եւ Տիկին ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՍԱՐԳԻՍԵԱՆ կը ծանուցանեն ծնունդը իրենց զաւկին՝ ԱՐԱՄի

Cannet, 30 Յունիս 1931



# Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ԱՆԻԷՌ, Պուա-Քոլոմպի կոմիտէի դասախօսական-վիճաբանական ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին 80 rue Charles Hefrous, Bois Colombes.

**ԳԱՒԱՌ**

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ընկերահամակրական դասախօսութիւնը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին։ Հ. Յ. Դաշնակցութեան Ակումբին մէջ։ Կը հրաւիրուին բոլոր ընկերները եւ համակիրները։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կոմիտասեան Խնամ. Յանձնաժողովը պարտք կը զգայ հրապարակաւ յայտնելու իր սրտագին շնորհակալութիւնները Կոմիտաս եւ Սիփան երգչախումբերու բոլոր անդամուհիներուն եւանդամներուն եւ իրենց համակրելի պետերուն՝ Պ. Պ. Սաքօ Յակոբեանի եւ Նշան Սերգոյեանի որոնք գնահատելի զոհողութեամբ եւ անձնուիրութեամբ տքնեցան եւ յաջողութեամբ ի գլուխ հանեցին ի պատիւ եւյօգուտ Կոմիտաս Վարդապետի սարքուած համերգի խմբական բաժինները, ինչպէս եւ ամէն ջանք ի գործ դրին նիւթական բաժնին յաջողութեան համար։

Սրտագին շնորհակալութիւններ նաեւ Օրիորդներ Մ. Բաբայեանի, Հ. Թորոսեանի, Ի. Պիլպիլեանի, Տ. Զառաֆեանի, Գ. Ղազարոսեանի, Լիլի Լասքինի եւ Պ. Նաւասարդեանի որոնք նոյնքան սիրայօժար, թանկագին մասնակցութիւն բերին մեներգի եւ դաշնակի բաժիններուն։

կոմիտասեան
խնամ. յանձնաժողով

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Նէօյեի, Իշխ. Ա.— 35։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

նման է նախորդ նախագահին՝ Տոքթ. Վայզմանի յայտարարութեան: Տոքթ. Վայզման փակման ճառն արտասանելով, շեշտեց թէ Գործադիր Խորհուրդը պէտք է մղուած տայ Պաղեստինի մէջ սկսուած աշխատանքներուն: Պէտք է ուրիշ ամէն նկատում ստորադասել այդ նպատակին, որ է Հրէական Ազգային Տուն մը հաստատել Պաղեստինի մէջ: Յոյս յայտնեց թէ, հակառակ առժամեայ դժուարութեանց, յառաջիկային կարելի պիտի ըլլայ շարունակել գործը համախորհուրդ հոգատար իշխանութեան հետ:

Բաւական լուրջ դժուարութեանց հանդիպեցաւ Գործադիր Խորհուրդին ընտրութիւնը եւ քանի մը անգամ ընդհատուեցան ժողովները:

## Պաղտատի գործադուլը

### 10,000 ԽԱՆՈՒԹՆԵՐ ՓԱԿ

Պաղտատէն կը հեռագրեն յուլիս 16 Թուականով.— Բոլոր խանութները գոց են տակաւին: Տասերկու օրէ ի վեր քառորդ միլիոն բնակիչներ ամէն միջոցի կը դիմեն ուտելիք ճարելու համար եւ աղքատները մեծ նեղութիւններ կը կրեն: Վարչապետ Նուրի փաշա այսօր վերադարձաւ Ընկիւրիէն եւ անմիջապէս սկսաւ համոզել բանթողները որ վերսկսին աշխատիլ: Նուրի փաշա յայտարարութիւն մը հրատարակեց, ծանուցանելով թէ կառավարութեան նպատակն է զեղչել, ոչ թէ աւելցնել տուրքերը: Յայտարարութիւնը կը դատապարտէ քաղաքական շահադէտները որոնք իրենց յետին նպատակներուն համար կը շահագործեն աղքատներուն թշուառութիւնը: Քաղաքապետութիւնն ալ յայտարարեց թէ կրնայ օգտագործել իր իրաւունքները, եւ չհաւաքել շատ մը նոր տուրքեր:

.*. Պատահական թղթակից մը կը գրէ թէ տասը հազար խանութներ փակուած են օրերէ ի վեր: Դժգոհները կ'ուզեն օգտագործել առիթը, որպէսզի դահլիճը հրաժարի: Դժգոհները չեն ուզեր որ Միջազգային Ազգերու Դաշնակցութեան անդամ ըլլայ:

## Հայ աղջնակի մը եղերական մահը

Վիէնի մեր հայրենակիցներէն, Խարբերդի Բազմաշէն գիւղացի Գ. Կարապետ Մուրատեանի փոքրիկ աղջիկը զոհ գնաց եղերական արկածի մը, ճզմուելով ելեկտրօպիւսի անիւներուն տակ: Մայրը այդ պահուն վազեր էր իր մանչուկը 5-6 տարու, քաշելու ինքնաշարժի մը քովէն, երբ ելեկտրօպիւսը սովորական արագութեամբ վար կ'իջնար: Երբ ետին կը դառնայ, աղջնակը փրկելու, արդէն շատ ուշ էր:

.*. Մարսէյլի մեր հայրենակիցներէն Գ. Իսքէնտէր Թոքաթլեան եւս քիչ մնաց զոհ երթար ինքնաշարժի արկածի մը: Իր խանութին մէջ նստած, ընթերցումով կը զբաղէր, երբ յանկարծ, նշմարեց որ ինքնաշարժ մը՝ որուն վարիչը կը բացակայէր, կը քալէ խանութին վրայ: Թ. Թոքաթլեան հազիւ ժամանակ գտաւ տեղէն նետուելու: Ինքնաշարժը արդէն խանութէն խուժեր, փշրելով աթոռը եւ աջ ոտքէն վիրաւորելով մեր հայրենակիցը, որ հիւանդանոցին մէջ նախնական դարմաններ ստանալէ յետոյ, վերադարձաւ իր բնակարանը: Քննութիւնը հաստատած է թէ օգտուելով շարժավարին բացակայութենէն, մէկ քանի տղեկներ շարժման մէջ դրած են կառքը, որ ուղղակի քալած է Գ. Թոքաթլեանի խանութին վրայ:














IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (5)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 6.— ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՓՈՐՁԸ ԿԱՏԱՐՈՒԵՑԱՒ

Արդարեւ այդ օրը, կոմիտէին ղեկավարներուն եւ ազդեցիկ անդամներուն առաջնորդութեամբ, մօտ 2000 Հայեր հաւաքուեցան Պատրիարքարանի եկեղեցիին մէջ: Հռետորները կրակոտ ճառեր արտասանեցին Թուրքերուն հարստահարութեանց եւ Հայոց անկախութեան մասին, ոտանաւորներ եւ բանաստեղծութիւններ արտասանուեցան, Պատրիարքին կողքին դեղանի հայ աղջիկ մը յուզիչ ճառ մը եւ բանաստեղծութիւն մը արտասանեց: Յետոյ բոլոր հայ եկեղեցիներէն սկսան զանգակները ղօղանջել: Ատրճանակ պարպեցին: Այսպէս յայտարարուեցաւ յեղափոխութեան սկիզբը:

Յեղափոխականները միացեալ եւ զինեալ ուժերով Գում Գափուէն քալեցին դէպի Նուրը Օսմանիէ: Ճամբուն վրայ պահակ կեցած ոստիկանները անոնց հետ չափազանց քաղաքավարութեամբ խօսեցան: Նոյն իսկ աղաչելով ըսին թէ իրենց չի վայլեր, եւ խնդրեցին որ ցրուին ու հեռանան: Ընդհակառակն,խռովարարները կը պատասխանէին.

— Ի՞նչ ցրուի՞լ, ղո՛ւք ցրուեցէք, արդէն բոլորդ պիտի հեռացնենք, կեցցէ՛ Հայաստան, կեցցէ՛ ազատութիւնը:

Այսպէս կը պատասխանէին խռովարարները, եւ իրենց մէջքէն հանելով ատրճանակները, եւ Թաշոյնները կը յայտնէին թէ պատրաստ են յարձակման անցնելու:

Ոչ մէկ խօսք մտիկ կ'ընէր այս կատղած մարդկային հեղեղը, որ կը հասէր Նուրը Օսմանիէ եւ Թավուքփազար Թաղերն ի վար: Բան չէին տեսներ, հանդիպած արգելքը կը խորտակէին, կը կոտրէին եւ շարունակ կը յառաջանային:

Փողոցներուն գլուխը պահակ զինուորներն ու ոստիկանները կ'ուզէին արգիլել անոնց յառաջխաղացումը:

— Ընկերնե՛ր, ըրածնիդ չի վայլեր: Եթէ գանգատ մը ունիք, օրինական ձեւով դիմեցէք կառավարութեան: Օ՛ն, դարձէք ձեր գործին: Բոլորդ ալ բոլորս այս երկրին հայը կ'ուտենք:

Այսպիսի յորդորներ կը կարդային ոստիկանները, մինչ խռովարարները զէնքով կը փոխադարձէին, նոյն իսկ քանի մը ոստիկան եւ զինուոր վիրաւորեցին, սպանութեան սկսան:

Խնդիրը տագնապալի ձեւ մը առաւ, հետզհետէ դժուարացաւ: Անմիջապէս խռովարարներուն դէմ ղրկեցի հեծեալ ոստիկաններու ջոկատներ, յանձնարարելով աւելորդ տեղը արիւն Թափելու երբեք տեղի չտալ: Սակայն խռովարարները շարունակ զէնք կ'արձակէին, կը զարնէին, կը վիրաւորէին ու կը սպաննէին խլած,Յոյն, Հրեայ, ամէն անցորդ, որ իր գործին կ'երթար:

### 7.— ԽՌՈՎՈՒԹԻՒՆԸ ԾԱՅՐ ԱՍՏԻՃԱՆ...

Վերջապէս, խռովութիւնը հասաւ իր ծայր աստիճանին. այնպէս որ անոնք սկսան ուղղակի յարձակիլ ոստիկանական ուժերուն վրայ: Ոստիկան ու զինուոր ստիպուեցան փոխադարձել եւ զէնք գործածել: Հետեւակ եւ հեծեալ ոստիկանական ուժերը արագօրէն քալեցին խռովարարներուն վրայ: Այն խռովարարները, որոնք ցրուելու ստիպուեցան, զանազան փողոցներու մէջ մտան եւ շարունակ զէնք արձակելով ժողովուրդը սարսափի մատնեցին:

Սուլթան Ահմէտի դամբարանին մօտերը, ոստիկանական խորհուրդի անդամներէն հազարապետ Սէրվէթ պէյ յանկարծ յարձակման կ'ենթարկուի բազմաթիւ Հայերու կողմէ: Ուժեղ բռունցք մը կը զարնէ ճիշդ երեսին այն Հայուն, որ բոլորէն առաջ նետուած եւ իր օձիքին փաթթուած էր: Այսպէս գետին տապալելէ յետոյ, կը փորձէ զէնքը հանել եւ ինքզինք պաշտպանել: Չորս հինգ զինուոր կային հետը, բայց խռովարարներու բազմութիւն մը պաշարած էր զանոնք:

### 8.— ԱՌԱՋԻՆ ՆԱՀԱՏԱԿԻՆ ԽՕՍՔԵՐԸ...

Հինգ տասնհայեր կըմերկացնեն իրենց Թաշոյնները,կը յարձակին հազարապետին վրայ, անխնայ կը զարնեն, մարմինը ծակծակ կ'ընեն: Հազարապետը հոգին կ'աւանդէ, կանչելով.

— Մայրաքաղաքին մէջ, զինեալ ոստիկանական եւ զինուորական ուժերուն առջեւ կը խողխողեն զիս սպանդանոցին մէջ մորթուած ոչխարներու պէս: Եւ ոչ ոք զէնքով կը փոխադարձէ այս ոճրագործներուն, որոնք կը խաղան երկրին եւ պետութեան կեանքին ու պատւոյն հետ: Աստուա՜ծ ողորմի այս երկրին:

Երբ այսպէս կը պոռայ, բիթէն ու բերնէն արիւն կը պոռթկայ եւ գետին կը տապալի:

Խռովարարները քանի մը հարուած ալ կ'իջեցնեն հազարապետին գլխուն, որ անկենդան գետին փռուած էր եւ կը պոռան.

— Ահա այսպէս պիտի սատկեցնենք բոլորն ալ: Կեցցէ՛ Հայաստան: Ահա ծագող արեւը (կիւն պու կիւն տըր):

Այս ոճիրէն յետոյ, արեան մշուշով իրենց աչքերը մթագնած, խռովարարները իրենց զէնքը դարձուցին ժողովուրդին վրայ, սկսան հանդիպածը սպաննել դանակով կամ ատրճանակով: Իրենց նպատակն էր խլածները փոխադարձութեան մղել, խռովութեան ընդհանուր ձեւ մը տալ, եւրոպական միջամտութեան գետին պատրաստել:

(Շար.)



## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

*ՓԱՐԻԶԻ կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ՝ Աղբիւր Սերոբ խումբը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 32 Ave. des Gobelins սրճարանի վերնայարկը:*

*Իսկ Հրազդան խումբը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4.30ին նոյն տեղը:*

*ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընկերա-համակրական դասախօսական ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Հայ ակումբին մէջ: Կը խօսի* տիկին Էլլէն Բիւզանդ: *Նիւթ՝ դրուագներ Հայաստանի անկախութենէն:*

*ՊԻԼՎԻԼԻ Ռոստոմ կոմիտէի վիճաբանական ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին* 131 Fbg. du Temple, *Նիւթ՝ շարունակութիւն նախորդ ժողովի վիճաբանութեան:*

*ՍԷՆ - ՄԻՇԷԼԻ Քրիստափոր խումբի ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին մէթրօ Օտէօնի դիմաց* La Petite Source *սրճարանի ստորնայարկը:*

*Պարտաւորիչ ներկայութիւն:*

*ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Զաւարեան կոմիտէի դասախօսական ժողովը այսօրուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 241* Rue J.J. Rousseau. *Կը խօսի ընկեր Վ. Փափազեան:*

*ԳԱՒԱՌ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի, ժողովը այսօր ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN




«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (9)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 16.— ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ ՆՈՐԷՆ ՊԱՅԹԵՑԱՒ

Այն ատեն զանազան կէտերու վրայ զրուած անկարեւոր բոլոր ուժերը հաւաքելով, եւ անոնց հրամանատարութիւնը ստանձնելով, հեծեալ ոստիկաններու հետ յարձակեցայ խռովարարներուն վրայ: Գնդակները «վը՜զ», «վը՜զ» կ'անցնէին ականջիս քովէն ու գլխուս վրայէն: Զէնքի ձայները, հայհոյութեան արձագանգները, կատաղութեան աղաղակները, ձիերուն վրնջիւնը, հոգեվարքներուն հառաչիւնը, վիրաւորներուն ողբուկոծը կարծել կուտային, որ երկու թշնամի բանակներ կոկորդ կոկորդի կը կռուին ռազմաճակատին վրայ: Երբ խուժանը տեսան որ կառավարական ուժերը հասան, ցրուեցան անհետացան: Իսկ Հայերը, շարունակ զէնք արձակելով, նահանջեցին դէպի իրենց եկեղեցիները: Այս դէպքերուն ընթացքին, որ տեւեց քանի մը ժամ, Հայերը դարձեալ կը պոռչտային եւ իրենց ձայնը մինչեւ երկինք կը բարձրացնէին.

— Հիմա կը հասնի անգլիական նաւատորմը եւ մեզ կ'ազատէ գերութենէն: Այն ատեն, տեսնենք, ի՞նչ պիտի ընէք դուք:

Ոստիկանական նախարարութիւն վերադառնալով, Պատրիարքին գրեցի պաշտօնական ծանուցագիր մը, հասկցնելով որ անհրաժեշտ է ցրուել այդ ամբոխը, հակառակ պարագային պատասխանատուութիւնը կը պատկանի հայ ազգին եւ անոր ներկայացուցչին՝ Պատրիարքին: Շուտով հասաւ Պատրիարքարանի կնիքով կնքուած ստացագիրը, որ ցոյց կուտար թէ ընդունուած է ծանուցագիրս:

Եւ սակայն, նոյն գիշերը Պոլսոյ զանազան կողմերէն շարունակ զէնքի ձայն կուգար: Հայերը ամէն գնով կ'աշխատէին որ խուժանը զինեալ փոխադարձութիւն մը կատարեն: Եւ լուր կը տարածէին թէ Հայերը այնինչ ծղկիթին վրայ յարձակելով, բոլոր խուժան հաւատացեալները սպաններ են, այն ինչ կողմը այսքան խուժաններու գլուխը պայթեցուցեր են: Եւ դեռ վիրաւորման ու սպանութեան դէպքերն ալ պակաս չէին: Էյուպի ծոտերը, ագիսի գործարանին բանուորներէն Րաշիտ գնդակով սպաննուեցաւ: 12 Հայեր բոլորը միասին եւ մէկ անգամէն իրենց զէնքը պարպելով գետին կը փռեն խեղճ բանուորը: Զէյրէքեօյի մէջ Մահմուտ եւ Քեազիմ անունով երկու Թուրքեր, երբ փողոցէն կ'անցնէին՝ կ'ենթարկուին Հայերու յարձակման: Երեք Հայեր, Լեւոն, Ռուբէն և Ծիվան, դաշոյնով և շամփուրով («շիշ») կը վիրաւորեն ու կը սպաննեն զանոնք: Այս յարձակման պահուն, Կալաթայի ծաքսատան բեռնակիրներէն Նշան, ներկայ ծոտ հինգ հարիւր Հայերու ուղղելով իր խօսքը, կ'ըսէ.

— Զեզ տեսնեմ, Աւետեաց օրն է այսօր, պէտք է թափել թշնամիին արիւնը, պէտք է Թուրք սպաննել:

Այսպէս կը քաջալերէր իր ընկերները: Գասըմփաշայի մէջ համետագործ Մինաս կ'ըսէ իր բարեկամին, Տիգրանի.

— Աւիթը այսօր եկած է, ես ամուսնացած եմ, դուն ամուրի ես: Ինչո՞ւ Պոլսոյ կողմը չանցար, քանի մը խուժան չսպաննեցիր:

Ու կը յանդիմանէ զայն:

Բերայի մէջ, Պալըքփազարի եկեղեցին հաւաքուած խռովարարներն ալ կ'ուզէին այդ կողմերը աւելի մեծ դէպքեր յարուցանել: Բերայի փոխկառավարիչը եւ ոստիկան-զինուորներու հրամանատարը յորդոր կարդալու եւ ցրուելու նպատակով կ'երթան եկեղեցի, բայց Հայերը կը յարձակին անոնց վրայ եւ կը փորձեն ծեծել ու վիրաւորել:

### 17.— ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ

Յաջորդ օրը յաջողեցայ ձերբակալել Միհրան եւ Համբարձում անուն երկու Հայեր: Ասոնք կ'ապահովէին հաղորդակցութիւնն ու յարաբերութիւնը Պատրիարքարանի եկեղեցւոյն մէջ ապաստանած խռովութեան եւ ապստամբութեան վարիչներուն եւ դուրսը Թաղերու իրենց արբանեակներուն միջեւ: Նեղը դրի զանոնք, խոստովանցնելու համար թէ կոմիտէն ի՞նչ գաղտնի ծրագիրներու համաձայն կը շարժի: Եթէ շիտակ խօսէին, ազատ պիտի արձակէի, իրենց ուզածին չափ դրամ պիտի տայի, եւ իրենց փափաքած երկիրը պիտի ղրկէի: Հակառակ պարագային, իբրեւ խռովութեանց ղեկավար պիտի դատապարտէի կախաղանի: Լեզուները բացուեցան ու ըսին.

— Կոմիտէն ամէնէն եռանդուն անդամներէն մէկն է Յակոբը, դուք ձերբակալեցիք: Թէեւ Հնչակեան կուսակցութեան երկրորդական գործիչներէն մէկն է, սակայն ամէնէն աւելի Յակոբն էր, որ կ'աշխատէր քարոզութիւն կը կատարէր: Երբ Յակոբ բանտարկուեցաւ, կոմիտէն ձեռնարկեց քարոզութեան գործը: Այժմ կոմիտէին ծրագիրն այսպէս է: Կամաց կամաց ամէնուն զէնք պիտի բաշխուի, որպէսզի ամէն Հայ կարենայ խուժան սպաննել: Բայց նախ որոշուած է սպաննել այն Հայերը, որոնք լրտեսութիւն կ'ընեն ոստիկանութեան հաշւոյն: Յետոյ յարձակում պիտի գործուի Պապը Ալիի վրայ, սպաննելու համար կառավարութեան բարձր պաշտօնատարները: Այս ձեւով, երբ արիւն հոսի, յեղափոխութիւնը ծայր պիտի տայ եւ կոմիտէն ալ հասած կ'ըլլայ իր նպատակին:

(Շար.)